Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 ՀՈՒԼԻՍ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։



# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Ամեն տարի սովետական ժողովուրդը նշում է Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական տրադիցիոն տոնը։ Այդ օրը սովետական աքանչելի երիտասարդությունը ցուցադրում է իր ուժն ու գեղեցկությունը, իր ֆիզիկական կոփվածքը, ֆիզկուլտուրային շարժման նվաճումները։

Սովետական կառավարության, բոլշևիկյան պանծալի պարտիայի և անձամբ մեծ Ստալինի հոգատարության շնորհիվ Սովետական Միության մեջ հսկայական հաջողությունների են հասել սովետական ֆիզիկական կուլտուրան և սպորտը։ Սպորտի բոլոր ձևերը մասսայաբար տարածվել են մեր երկրում և լայնորեն ընդգրկել մեր աճող ու զարգացող երիտասարդությանը։

Ֆիզիկական կուլտուրան և սպորտը, որոնք մեր երկրում դարձել են համաժողո-

վըրդական և որոնց զարգացման համար բոլշևիկների պարտիան, սովետական կառավարությունը ստեղծել են բոլոր հնարավորություններն ու միջոցները, երիտասարդության կոմունիստական դաստիարակության անբաժանելի մասն են կազմում։

Խոսելով կոմունիստական դաստիարակության մասին, Կարլ Մարքսը նշել է.

«Դաստիարակություն ասելով մենք հասկանում ենք երեք բան.

Առաջինը՝ մտավոր դաստիարակություն։

Երկրորդը՝ ֆիզիկական դաստիարակություն, այնպիսին, որը տրվում է մարմնամարզական դպրոցներում և զինավարժության միջոցով։

Երրորդը՝ տեխնիկական ուսուցում...»։

Ֆիզիկական կուլտուրան շատ բարձր է գնահատել Վ. Ի. Լենինը։

«Մեր աշխատանքային երկրում,— ասում էր Լենինը,— հարկավոր են ֆիզիկապես ամուր մարդկանց, կամքի, արիության, եռանդի, հաստատակամության տեր մարդկանց միլիոնավոր բանակներ։ Նրանց է պատկանում ապագան, նրանց ձեռքով է նվաճվելու մարդկային հասարակության նոր հիմքերի կառուցման իրավունքը»։



ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն 1925 թվականին և ապա 1929 թվականին ընդունած իր որոշումների մեջ ֆիզկուլտուրան և սպորտը դիտում է ոչ միայն իբրև երիտասարդության ֆիզիկական առողջացման, կուլտուրական և ռազմական պատրաստության միջոց,այլև որպես աշխատավորության լայն մասսաների կոմունիստական դաստիարակության, նրանց պարտիական, սովետական ու պրոֆմիութենական կազմակերպությունների շուրջը համախմբելու, հասարակական-քաղաքական կյանքի մեջ ներգրավելու մեթոդներից մեկը։

Սովետական Միության Հայրենական Մեծ Պատերազմը ցույց տվեց ֆիզիկական կուլտուրայի և սպորտի խոշոր նշանակությունն ու կարևորությունը մեր Հայրենիքի պաշտպանության համար։

«Ժամանակակից պատերազմը,—ասում է ընկեր Ստալինը,— զորքերից պահանջում է մարտական ու բարոյական բարձր հատկություններ, ռազմական և քաղաքական լավ պատրաստություն, մարտական տեխնիկայի հմուտ տիրապետում, հուսալի փոխգործողություն և ֆիզիկական մեծ դիմացկունություն»։

Սովետական մարդկանց ֆիզիկական դաստիարակությունը պետական խոշոր գործ է, որն իր իսկական զարգացումն ու ծաղկումն է ստացել Սովետական երկրում, որտեղ ֆիզիկական կուլտուրան կարևորագույն տեղ է գրավում աշխատավորության հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ։

Սովետական կառավարությունը յուրաքանչյուր տարի հսկայական միջոցներ է հատկացնում ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման համար։ Միայն 1947 թվականին առողջապահական և ֆիզկուլտուրային հատկացումները ՍՍՌՄ-ում կազմում են 19 միլիարդ ռուբլի։

Նախքան Հայրենական Մեծ պատերազմը, քսան տարվա ընթացքում, ՍՍՌՄ-ում կառուցվել են 600 ստադիոն, 14 հազար կոմպլեքսային սպորտ հրապարակներ, 500 ջրային կայաններ և այլն։ Միայն Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայում կան ավելի քան 316 ստադիոն, 2.887 սպորտային հրապարակ։ ՍՍՌՄ-ում գործում են 11 ֆիզկուլտ ինստիտուտ, 39 տեխնիկում, հարյուրավոր սպորտային դպրոցներ, որոնք ստալինյան նոր



հնգամյակում պատրաստելու են 25 հազար սպորտային մասնագետներ։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ֆիզիկական կուլտուրան ձեռք է բերել նոր, ավելի մեծ նվաճումներ։ Սահմանվել են համաշխարհային նոր ռեկորդներ։ Մեր հասարակայնությանը հայտնի են այնպիսի անուններ, ինչպես օրինակ համաշխարհային սպորտսմեններ՝ Գ. Նովակը, Գ. Պոպովը, Ն. Շատովը, Յա. Կուցենկոն, Ս. Համբարձումյանը, Ռ. Մանուկյանը, Ա. Բոժկոն, Ի. Մեխանիկը և շատ ուրիշներ, որոնք քայլում են սովետական ֆիզկուլտ շարժման առաջին շարքերում։ Եվրոպական մի շարք մրցություններում ՍՍՌՄ սպորտսմենները փայլուն հաղթանակներ են տարել։

Զգալի նվաճումներ ունեն նաև Սովետական Հայաստանի ֆիզկուլտուրային կազմակերպություններն ու կամավոր ընկերությունները։ Կառավարության որոշմամբ Երևանում հիմնադրված է Ֆիզկուլտուրայի Պետական Ինստիտուտ, որը պատրաստում է ֆիզկուլտուրային բարձրագույն կրթությամբ լավագույն մասնագետներ։ Գործում է Ֆիզկուլտուրային տեխնիկումը, որտեղ

պատրաստվում են միջնակարգ կրթությամբ ֆիզկուլտ մասնագետներ։

Սովետական Հայաստանում ֆիզկուլտուրային կոլեկտիվների թիվը հասնում է 890-ի, որոնց մեջ ընդգրկված են ավելի քան 40 հազար ֆիզկուլտուրնիկներ։ Լայն ծավալ են ստացել ալպինիզմը, թեթև ատլետիկան, ֆուտբոլը, բասկետբոլը, վոլեյբոլը, դահուկային սպորտը, մարմնամարզությունը և սպորտի այլ ձևերը։

Ֆիզիկական կուլտուրայի բնագավառում խոշոր նվաճումների են հասել մի շարք երիտասարդ սպորտսմեններ։ Մեր սպորտսմեններից Իվան Ազզարովը 1947 թվականին Եվրոպայի առաջնության մրցումներում ծանրության բարձրացման մեջ գրավեց առաջին տեղը, ստացավ Եվրոպայի չեմպիոնի կոչում և պարգևատրվեց ոսկե մեդալով։

Վերջերս ըմբշամարտի Համամիութենական առաջնության մրցություններում առաջին տեղը գրավեցին և միութենական չեմպիոնի կոչում ստացան պատանի ըմբշամարտիկներ Ա. Ներսիսյանն ու Լ. Փահլևանյանը, որոնց մարզիչն է սպորտի վաստակավոր վարպետ Ս. Վարդանյանը։ Այս տարվա հունիսին Մոսկվայում տեղի ունե-



ցավ համամիութենական կրոս, որին մասնակցում էին 254 սպորտսմեններ։ Հայաստանի թեթև ատլետներից Աննա Ռեկունովան այդ մրցության մեջ գրավեց չորրորդ տեղը, առաջ անցնելով Փարիզի «Յումանիտե» թերթի անվան կրոսի մասնակիցներից, և ստացավ վարպետի կոչում։

Լավագույն և աչքի ընկնող սպորտսմեններից են վարպետ մարզիչ Հ. Շահինյանը, սպորտի վարպետներ՝ Ա. Նազարյանը, Թ. Աթանասյանը, Ս. Արակելյանը, լավագույն շախմատիստներ՝ Տ. Պետրոսյանը, Ա. Սարգըսյանը։ Օրեց-օր աճում է անվանի դահուկավորների, ֆուտբոլիստների, բասկետբոլիստների, լողորդների, թեթև ատլետների, ալպինիստների, հեծանվորդների թիվը։ Սպորտային կազմակերպությունները Սովետական Հայաստանում գնալով ավելի են ծավալվում։ Սերը դեպի սպորտը ավելի ու ավելի է մեծանում։

Ֆիզիկական կուլտուրան և սպորտը լայնորեն ծավալվում են նաև կոլխոզային գյուղում։ Կոլխոզային ֆուտբոլի գավաթի առաջնության մրցություններում առաջին տեղը պատկանում է Էջմիածնի շրջանի Միկոյանի անվան կոլխոզի թիմին։ «Դինամո» և

«Սպարտակ» ֆուտբոլային լավագույն թիմերի կողքին նշանավոր է նաև Կիրովականի Քիմիական կոմբինատի ֆուտբոլային թիմը։ Գյուղական երիտասարդության Համամիութենական դահուկային մրցություններում Հայաստանի կոլխոզային թիմը գրավեց չորրորդ տեղը։ Միութենական պատանեկական մարմնամարզական մրցություններում Հայաստանի պատանեկական թիմը վերջերս շահեց երկրորդ տեղը, հետ մնալով միայն Մոսկվայի քաղաքային թիմից։

Ռեսպուբլիկայում լայն ծավալ է ստանում դահուկային սպորտը և զարգանում է ալպինիզմը։ Հայաստանում կազմակերպված կրոսներին, դահուկային ու ալպինիստական արշավներին 1947 թվականին մասնակցել են ավելի քան 45 հազար երիտասարդներ։

Հազարավոր երիտասարդներ և պատանիներ հանձնել ու հանձնում են սովետական ֆիզիկական դաստիարակության հիմքը հանդիսացող համամիութենական կոմպլեքս՝ «Պատրաստ Աշխատանքի և Պաշտպանության» նորմաները, ցույց տալով իրենց բարձր տոկունությունն ու պատրաստակամությունը աշխատանքի և սրբազան Հայրենիքի պաշտպանության գործում։ Միայն



1947 թվականի ընթացքում ՊԱՊ-ի և ՆՊԱՊ-ի նորմաները հանձնել են ավելի քան 11 հազար մարդ։

Այս տարվա հուլիսի 20-ին Մոսկվայում տեղի ունենալիք Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրվան նվիրված ֆիզկուլտուրային շքերթին Սովետական Հայաստանի ֆիզկուլտուրնիկներից մասնակցելու են 412 հոգի։

Օրեցօր ծաղկում ու բարգավաճում են սովետական ֆիզիկական կուլտուրան և սպորտը, որոնց առջև դրված խնդիրները դառնում են ավելի մեծ ու ավելի պատվավոր։

«Մենք ուզում ենք,— մատնանշում էր Մ. Ի. Կալինինը,— բազմակողմանիորեն զարգացնել մարդուն, որպեսզի նա կարողանա լավ վազել, լողալ, արագ ու գեղեցիկ քայլել, որպեսզի նրա բոլոր օրգանները կանոնավոր լինեն, մի խոսքով որպեսզի նա լինի նորմալ, առողջ մարդ, պատրաստ աշխատանքի և պաշտպանության համար, որպեսզի բոլոր ֆիզիկական հատկություններին զուգահեռ ճիշտ զարգանան նրա նաև մտավոր հատկությունները»։

Սովետական երկրում սպորտի զարգաց-

ման համար ստեղծված են բոլոր պայմանները։ Լենինի-Ստալինի մեծ գաղափարներով դաստիարակված սովետական մարդիկ, որոնք ցույց են տվել իրենց բարոյական ու իդեական գերազանցությունը բուրժուական հասարակության մարդու նկատմամբ, պետք է լինեն նաև ուժեղ, ֆիզիկապես առողջ, նրանց մեջ պետք է զուգակցված լինի հոգևոր ու ֆիզիկական գեղեցկությունը։

Այս տարի մեր երկիրը Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը դիմավորում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 30-ամյակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցության պայմաններում, պայքարելով հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Տասնյակ հազարավոր սովետական ֆիզկուլտուրնիկներ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ ընթանում են սոցիալիստական մրցության առաջավորների շարքերում։ Բոլոր Ֆիզկուլտուրային կոլեկտիվները պետք է լինեն առաջավոր և օրինակելի, պետք է Հոկտեմբերյան Սոցիալիստական



Մեծ Ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը նշանավորեն աշխատանքի և սպորտի մեջ ձեռք բերված նորանոր նվաճումներով։

Բոլշևիկյան պարտիայի և անձամբ մեծ Ստալինի հայրական հոգատարությունը ֆիզկուլտուրայի և նպորտի նկատմամբ, պարտավորեցնում է յուրաքանչյուր ֆիզկուլտուրնիկի և սպորտսմենի արտադրության մեջ լինել առաջավոր, է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, հետագա է՛լ ավելի բարձր ծաղկման հասցնել ֆիզկուլտշարժումն ու սպորտը մեր փառապանծ Հայրենիքում։

— * —

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՀԶՈՐ ՆԱՎԱՏՈՐՄԸ

(ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի Օրվա առթիվ)

*Այս տարվա հուլիսի 27-ը Սովետական Միության Ռազմա-Ծովային Նավատորմի օրն է— Սոցիալիզմի Երկրի ռազմա-ծովային ուժերի մարտական ստուգատեսի օրը։*

*1939 թվականին Սովետական կառավարության որոշմամբ հայտարարված՝ ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը, որ ամեն տարի նշվում է հուլիս ամսին, մեր երկրում դարձել է համաժողովրդական տոն։ Սովետական բազմամիլիոն ժողովուրդն այդ օրը բարձր խանդավառությամբ մեծարում է մեր փառապանծ ծովայիններին— Հայրենիքի հավատարիմ պաշտպաններին, որոնք Հայրենական Մեծ պատերազմի տարիներին ցույց տվին հերոսության ու Հայրենիքին անձնազոհ նվիրվածության փայլուն օրինակներ և այժմ էլ, խաղաղ ժամանակ, արթուն պահպանում են սովետական պետության ծովային սահմանները։*



*Մեր Հայրենիքը ո՛չ միայն ցամաքային մեծ տերություն է, որն իր տերիտորիայով երեք անգամ ավելի մեծ է Ամերիկայի Միացյալ Նահանգներից և չորս անգամ ավելի մեծ, քան թե Արևմտյան Եվրոպայի բոլոր երկրները միասին վերցրած։ ՍՍՌՄ-ը նաև ծովային մեծ տերություն է, որի սահմաններն ավելի քան 40 հազար կիլոմետր երկարությամբ ողողում են երկու օվկիանոս՝ Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսն ու Խաղաղ օվկիանոսը և տասներեք ծովեր։*

*Հզոր Ռազմա-Ծովային Նավատորմ ունենալը մեր Հայրենիքի համար հատկապես կարևոր ու կենսական խնդիր է։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին գումարման առաջին սեսիայում, 1938 թվականին ընկեր Մոլոտովն ասաց. «Մենք պետք է հաշվի առնենք այն, որ մեր երկիրը մեծ է, որ հսկայական տարածության վրա նրա ափերը ողողում են ծովերը, և այդ մեզ միշտ հիշեցնում է, որ մեր նավատորմը պետք է լինի ամուր, ուժեղ»։*

*Ռուս մեծ ժողովուրդն իր հերոսական*

պատմության ընթացքում ստեղծել է ծովային փառապանծ տրադիցիաներ, Ռուսական պետության կյանքում նավատորմին միշտ մեծ տեղ է պատկանել։ Ռուսաստանի խոշորագույն պետական գործիչներից մեկը՝ Պետրոս առաջինը դեռևս իր ժամանակին ասել է, թե այն պետությունը, որը ստեղծել է իր բանակը, «ունի մեկ ձեռք», իսկ այն պետությունը, որը և՛ բանակ է ստեղծել, և՛ նավատորմ, «երկու ձեռք ունի»։

Ռուսական շատ և շատ ծովայինների, ամբողջ անձնակազմերի և նավատորմերի անուններ պսակված են անմահ մարտական փառքով։ Բավական է հիշել Գանգուտի ճակատամարտը, որտեղ Պետրոս առաջինի ստեղծած ռուսական դեռ երիտասարդ նավատորմը գլխովին ջախջախեց շվեդներին, որոնք այն ժամանակ հզորագույն հակառակորդ էին համարվում, և գերեց 10 ռազմանավ։

Մեր փառապանծ կարմիր ծովայինները ոչ միայն ժառանգել են ռազմական նավատորմի մարտական տրադիցիաները, այլև սրբությամբ պահպանում ու զարգացնում են նրա նաև ռևոլյուցիոն տրադիցիաները։

Դեռ 1905 թվականին նավաստիներն ա-



մենաակտիվ մասնակցություն ունեցան պրոլետարիատի ռևոլյուցիոն ելույթներին։ Ժողովրդի հիշողության միջից երբեք չի ջնջվի «Պոտյոմկին» զրահանավի ռևոլյուցիոն նավաստիների ապստամբությունը, որին Լենինը հսկայական նշանակություն էր տալիս։ Ցարիզմի ամենադաժան ռեպրեսիաները չէին կարողանում ճնշել նավաստիների ռևոլյուցիոն ոգին։

1917 թվականին ռևոլյուցիոն նավաստիները եղան բոլշևիկյան պարտիայի հավատարիմ հենարանը։ Կարմիր գվարդիայի բանվորական ջոկատների հետ միասին նավաստիները հուլիսյան նշանավոր օրերին մարտնչում էին Պետրոգրադի փողոցներում, նրանց հետ միասին նավաստիները գրոհեցին Ձմեռային պալատի վրա, որի դեմ ուղղված էին ռևոլյուցիայի կողմն անցած «Ավրորա» հածանավի հրանոթները։

Սովետական երկրի զինված ուժերի մի մասը կազմող Ռազմա-Ծովային Նավատորմը Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, հաղթական Կարմիր Բանակի զորամասերի հետ սերտ փոխգործողությամբ, հիտլերյան Գերմանիայի ու իմպերիալիստական Ճապոնիայի դեմ մղած ահեղ մար-

տերում նորանոր հերոսական գործերով բազմապատկեց ռուսական նավատորմի փառապանծ տրադիցիաները։

Սովետական ժողովուրդը միշտ սիրել ու փայփայել է իր Ռազմա-Ծովային Նավատորմը։ Հայրենական Մեծ Պատերազմի տարիների ընթացքում է՛լ ավելի աճեց ու ամրացավ ժողովրդի սերտ կապը Նավատորմի, նրա մարտիկների ու հրամանատարների հետ։ Սովետական մարդիկ ամենաջերմ սիրով ու հոգատարությամբ շրջապատեցին Նավատորմը, նրա քաջարի մարտիկներին ու խիզախ հրամանատարներին, ցույց տալով նրան բարոյական ու նյութական մեծ աջակցություն։ Բավական է միայն հիշատակել այն փաստը, որ 1943—1945 թվականներին, երկու և կես տարվա ընթացքում մեր երկրի աշխատավորները կամավոր կերպով իրենց խնայած միջոցներից հավաքեցին հսկայական գումար և դրանով կառուցեցին ավելի քան 150 ռազմանավ։

Բոլշևիկների պարտիան, սովետական կառավարությունը միշտ հոգ են տարել Սովետական պետության զինված ուժերը, նրա Ռազմա-Ծովային Նավատորմը ուժեղացնե-



լու մասին։ Ստալինյան հնգամյակի տարիներին Սովետական Նավատորմն ստացավ հարյուրավոր ռազմանավեր, որոնք Հայրենական Պատերազմի ընթացքում դիմացան ծանր փորձությունների, ցույց տալով իրենց գերազանց մարտական հատկությունները։

Սովետական հզոր ինդուստրիայի աճման հիմքի վրա չտեսնված թափով զարգացավ Սովետական Ռազմա-Ծովային Նավատորմը։ Ստալինյան իմաստուն քաղաքականության շնորհիվ ստեղծված մեր նավաշինական արդյունաբերությունը կարողացավ հասնել այն բանին, որ արտադրեց ամեն կարգի ու տիպի հզոր ռազմանավեր, այդ թվում մեծ արագություն և ահեղ սպառազինություն ունեցող գծանավեր ու հածանավեր։ Միայն 1939 թվականին Սովետական Ռազմա-Ծովային Նավատորմը արդյունաբերությունից ստացավ 112 ռազմանավ, այսինքն համարյա այնքան, որքան ցարական կառավարությունը կառուցել էր առաջին համաշխարհային պատերազմին նախորդող 10 տարվա ընթացքում։ Իսկ 1940 թվականին մեր Ռազմա-Ծովային Նավատորմը համալրվեց տեխնիկայի վերջին

խոսքով կառուցված նոր հզոր ռազմանավերով։

Այդպես սկսեց իրականանալ ընկեր Ստալինի առաջադրած խնդիրը՝ Սովետական տերության հզոր Ռազմա-Ծովային Նավատորմ ստեղծելու մասին։

Բոլշևիկյան պարտիայի և անձամբ ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ ու հոգատարությամբ հսկայական աշխատանք ծավալվեց Ռազմա-Ծովային Նավատորմի կադրերի պատրաստման ու վերապատրաստման ուղղությամբ։ Ռազմա-Ծովային Նավատորմի կադրերի դաստիարակության լավագույն դարբնոցն են հանդիսանում Ռազմական Ակադեմիաները, ռազմա-ծովային ուսումնական հաստատությունները, զանազան դպրոցներն ու դասընթացները։

Մեր փառապանծ Ռազմա-Ծովային Նավատորմը խոշոր դեր խաղաց Հայրենական Մեծ Պատերազմի տարիներին։ Նա Կարմիր Բանակի իսկական մարտական օգնականն էր։ Ընկեր Ստալինը շատ անգամ է նշել Ռազմա-Ծովային Նավատորմի հերոսական գործողությունները։ 1945 թվականի հուլիսի 22-ին Ռազմա-Ծովային Նավատորմի օրվա առթիվ իր հրամանի մեջ նա ասաց՝ «Ֆա-



շիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ Պատերազմում մեր պետության Ռազմա-Ծովային Նավատորմը եղավ Կարմիր Բանակի հավատարիմ օգնականը... Կարմիր Բանակի պաշտպանության և հարձակման ժամանակ նավատորմը հուսալիորեն պահպանում էր Կարմիր Բանակի թևերը... լուրջ հարվածներ էր հասցնում հակառակորդի առևտրական նավատորմին ու նավագնացությանը և ապահովեց իր կոմունիկացիաների անընդմեջ գործողությունը»։

Սովետական Միության Ռազմա-Ծովային Նավատորմը ամենաակտիվ մասնակցություն ունեցավ հերոս քաղաքների՝ Օդեսայի, Սևաստոպոլի, Լենինգրադի և Ստալինգրադի պաշտպանության գործում։ Ռազմանավերը համալրումներ ու ռազմամթերք էին փոխադրում պաշարված քաղաքների համար, այնտեղից էվակուացիայի էին ենթարկում վիրավորներին ու խաղաղ բնակչությանը։ Սովետական ռազմանավերի հուժկու կրակը խորտակում էր գերմանական զավթիչների ամրությունները, քայքայում նրանց կոմունիկացիաները, ոչնչացնում թշնամու տեխնիկան և կենդանի ուժը։ Պա-

տերազմի 46 ամսվա ընթացքում սովետական ռազմա-ծովային ուժերը ջրասույզ արին հակառակորդի ավելի քան չորս հազար զանազան տիպի ռազմանավ ու փոխադրանավ։

Գերմանական զավթիչների դեմ մղված մարտերում ցուցաբերած հերոսության ու խիզախության և Հայրենական Պատերազմի ընթացքում Հայրենիքի հանդեպ մատուցած աչքի ընկնող ծառայությունների համար 507 ծովայինների ու ծովային օդաչուների շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում, դրանցից 7 հոգու կրկնակի հերոսի կոչում, որոնց թվումն է նաև հայ ժողովրդի պանծալի զավակ՝ գվարդիայի փոխգնդապետ Նելսոն Ստեփանյանը։

Սովետական Հայրենիքի հանդեպ մատուցած ծառայությունների համար շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են ավելի քան 160 հազար ծովայիններ, այդ թվում մի քանի հարյուր հայ ծովայիններ։

Սովետական ծովայինների մարտական սխրագործությունները կապրեն դարեր։ Սովետական ժողովուրդը երբեք չի մոռանա այն հինգ կոմերիտական կարմիրնավատորմայիններին, որոնք պաշարված Սև-



վաստոպոլում երեք օր պաշտպանում էին մի ամրություն։ Նրանք հետ մղեցին մի քանի գրոհ և ոչնչացրին տասնյակ հիտլերականների։ Ընկեր Ստալինի նկարի վրա Նրանք գրել էին իրենց երդումը առաջնորդին — կռվել գերմանա-ֆաշիստական ավազակների դեմ այնպես, ինչպես վայել է սևծովյան նավաստիներին, կռվել մինչև վերջին փամփուշտը, մինչև վերջին շունչը։ Հերոսները զոհվեցին, բայց հավատարիմ մնացին իրենց երդմանը։

Երբ հիտլերականները շրջապատեցին կարմիրնավատորմային Իվան Սիվկոյին և առաջարկեցին նրան գերի հանձնվել, Սիվկոն պատասխանեց.— Ռուս ծովայինները գերի չեն հանձնվում,— և նետեց ձեռքի նռնակը։ Պայթյունը ոչնչացրեց մոտեցող հիտլերականներին, զոհվեց նաև ինքը՝ հերոս կարմիրնավատորմայինը։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո մեր ծովային սահմաններն ավելի երկարացան։ Սովետական Միության ստացած նոր ռազմա-ծովային բազաներն ավելի հուսալի են դարձնում մեր ծովային սահմանների պահպանությունը։ Արևմուտքում Սովետական Միությանն են

վերադարձված Կլայպեդայի մարզը, որ գերմանացիները խլել էին Լիտվայից, մեր տերիտորիային է միացված Քյոնիգսբերգի մարզը՝ իր չսառչող նավահանգիստներով, որ այժմ վերանվանված է Կալինինգրադի մարզ, նաև Պեչենգայի շրջանը՝ հյուսիսում, իսկ արևելքում Պորտ-Արտուրը և Դալնի նավահանգիստը։ Այս հանգամանքն ավելի է մեծացնում մեր ռազմա-ծովային ուժերի հզորացման անհրաժեշտությունը։

Ստալինյան նոր հնգամյակը նախատեսում է էլ ավելի զարգացնել մեր երկրում սեփական նավաշինությունը։ Մինչև 1950 թվականը նավաշինությունը 1940 թվականի համեմատությամբ կրկնապատկվելու է։ Կառուցվելու են նոր ռազմանավեր և ռազմածովային բազաներ, որոնք աննախընթաց չափերով կուժեղացնեն Սովետական Միության Ռազմա-Ծովային Նավատորմը։

Սովետական ժողովուրդն այս տարի Ռազմա-Ծովային Նավատորմի օրը դիմավորում է հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարվա պլանների կատարման ու գերակատարման համար մղվող հերոսական պայքարի պայմաններում։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 30-ամ-



յակի պատվին ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցությունը, որ լայն թափ է ստացել մեր երկրում, նոր, ավելի լայն հնարավորություններ է ստեղծում մեր Հայրենիքի հետագա զարգացման ու ծաղկման համար, թե՛ ցամաքում, և թե՛ ծովում մեր զինված ուժերն է՛լ ավելի հզորացնելու համար։

Մեր Մեծ Հայրենիքին վայել հզոր նավատորմ ստեղծելու ստալինյան պլանով ոգեշնչված, սովետական ժողովուրդը բոլոր ուժերը կգործադրի այն իրականացնելու համար, է՛լ ավելի կամրապնդի Սոցիալիզմի Երկրի ռազմա-ծովային հզորությունը։

— * —

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Հուլիսի 10-ից մինչև 12-ը Երևանում նիստեր ունեցավ մեր ռեսպուբլիկայի պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ Սեսիան։ Սեսիան քննության առավ և հաստատեց Սովետական Հայաստանի ներկա՝ Ստալինյան նոր հնգամյակի երկրորդ տարվա ֆինանսական պլանը— Հայկական ՍՍՌ 1947 թվականի պետական բյուջեն։ Սեսիան նաև հաստատեց 1946 թվականի բյուջեի կատարման մասին հաշվետվությունը։

Պետական բյուջեն ռեսպուբլիկայի մեկ տարվա ֆինանսական պլանն է։ Սովետական պետությունը վարում է պլանային տնտեսություն։ Բյուջեի միջոցով նա հավաքում և կենտրոնացնում է հսկայական միջոցներ և ապա այդ միջոցները պլանավոր-



ված կերպով բաշխում է տնտեսության զանազան ճյուղերի միջև, այսինքն՝ ֆինանսավորում է արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, տրանսպորտը, սոցիալ-կուլտուրական ձեռնարկումները։ Այդպիսով, բյուջեն ժողովրդատնտեսական պլանի կատարման, բոլշևիկյան պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականության կիրառման զորեղ միջոց է։

Հայկական ՍՍՌ 1947 թվականի պետական բյուջեի եկամուտների գումարը սահմանված է 1 միլիարդ 60,3 միլիոն ռուբլի։ Պետական բյուջեի եկամուտները անցյալ տարվա համեմատությամբ աճում են 161,6 միլիոն ռուբլով, իսկ 1940 թվականի համեմատությամբ մեր՝ ռեսպուբլիկայի բյուջեն այս տարի աճում է 575,3 միլիոն ռուբլով, կամ ավելի քան երկու անգամ։

Ի՞նչ աղբյուրներից են գոյանում բյուջեի եկամուտները։

Բյուջեի եկամուտների հիմնական աղբյուրը կազմում են պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների սոցիալիստական կուտակումները, որոնց տեսակարար կշիռը բյուջեի եկա-

մուտների ընդհանուր ծավալի մեջ կազմում է 73,4 տոկոս։

Պետական ձեռնարկությունների և կազմակերպությունների կուտակումները բյուջեի մեջ են մտնում շրջանառության հարկի և օգուտներից կատարվող մասհանումների ձևով։

Շրջանառության հարկից, այսինքն մեր ապրանքաշրջանառության և վաճառահանման բազաների ստացած կուտակումներից ռեսպուբլիկայի բյուջեն 1947 թվականին կստանա 663,5 միլիոն ռուբլի։

Եկամուտների խոշոր աղբյուր են հանդիսանում պետական ձեռնարկությունների օգուտներից բյուջեին կատարվող մասհանումները, որոնց գումարը կազմում է 77 միլիոն ռուբլի։ Օգուտներից կատարվող մասհանումները անցյալ տարվա համեմատությամբ աճում են 24,8 միլիոն ռուբլով, կամ 47,6 տոկոսով, որը բացատրվում է արդյունաբերական ձեռնարկությունների և տնտեսական այլ կազմակերպությունների օգուտների աճումով։ Այս հանգամանքը չափազանց կարևոր է։ Դա ցույց է տալիս, որ մեր սոցիալիստական արդյունաբերությունն ինքը միջոցներ է կուտակում իր հետագա զարգաց-



ման համար։ Զգալի գումար է կազմում կոլխոզներից ու կոոպերատիվ կազմակերպություններից գանձվող եկամտային հարկը։

Պետության եկամուտների այդ հիմնական աղբյուրը՝ շրջանառության հարկից կատարվող մասհանումները անցյալ տարվա համեմատությամբ աճում է 162,2 միլիոն ռուբլով։ Շրջանառության հարկի այդպիսի ավելացումը բացատրվում է ապրանքաշրջանառության զգալի ծավալումով, լայն սպառման ապրանքների թողարկումն ավելացնելով։

Պետական բյուջեի եկամուտների մեջ կարևոր տեղ են գրավում բնակչության միջոցներից ստացվող մուտքերը։ Այստեղ առաջին հերթին պետք է նշել բնակչությունից գանձվող հարկերը, որոնցից այս տարի պետական բյուջեին մուտք նախատեսվում է 122,7 միլիոն ռուբլի։ Հարկերի դրույքները 1947 թվականին չեն փոխվում, սակայն բնակչությունից գանձվող հարկերի գումարը անցյալ տարվա համեմատությամբ որոշ չափով աճում է գյուղում վճարողների թվի և նրանց եկամուտների ավելացման և քաղաքներում բանվորների ու ծառայողների

աշխատավարձի ֆոնդերի աճման պատճառով։

Պետության եկամուտների մյուս կարևոր աղբյուրն են կազմում պետական փոխառությունները և խնայդրամարկղներում բնակչության ունեցած ավանդները։ Այս տարի մայիսին թողարկված՝ «Ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման պետական փոխառության» բաժնեգրության գումարը Սովետական Հայաստանում գերակատարվեց 13 միլիոն ռուբլով։ Նախատեսված 157 միլիոն ռուբլու դիմաց փաստացի բաժնեգրությունը կազմեց 170 միլիոն ռուբլի, ընդ որում կոլխոզնիկներն իրենց բաժնեգրության գումարը հիմնականում մուծեցին կանխիկ, իսկ բանվորներն ու ծառայողները գերակատարեցին բաժնեգրության գումարը մոտ 12 միլիոն ռուբլով։

Փոխառությունների բաժնեգրությունը մեզ մոտ միշտ վերածվում է դեպի բոլշևիկների պարտիան ու կառավարությունը, դեպի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը ժողովրդի անսահման սիրո ու նվիրվածության մեծ ցույցի։ Այս տարվա փոխառության բաժնեգրությամբ Սովետական Հայաստանի



աշխատավորությունը մեկ անգամ ևս ցույց ավեց, որ նա պատրաստ է մեր ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման համար բացի անձնվեր աշխատանքից ներդնելու նաև իր խնայած միջոցները։ Սովետական պետությունն իր հերթին կանոնավոր կերպով բնակչությանը վճարում է պարտատոմսերին ընկնող շահումներն ու տոկոսները։

Բյուջեի կարևոր եկամտային աղբյուր են կազմում խնայդրամարկղներում բնակչության ունեցած ավանդները, որոնք վերջին տարիների ընթացքում զգալիորեն աճել են և կոչված են մեծ դեր խաղալու ժողովրդական տնտեսության ֆինանսավորման գործում։

Պարտադիր կոլարային ապահովագրության միջոցներից ռեսպուբլիկայի 1947 թվականի պետական բյուջեյում կատարվող մուտքերը կազմում են 3,5 միլիոն ռուբլի։

Սրանք են այն հիմնական աղբյուրները, որոնցից կազմվում է պետական բյուջեն։

Այս բոլոր մուտքերը, որոնցից կազմվում է պետական բյուջեի եկամտային մասը, նրա ծախսային մասում նախատեսվում են տնտեսության բոլոր ճյուղերի՝ արդյունա-

բերության, գյուղատնտեսության, կոմունալ և բնակարանային շինարարության, կուլտուրայի ու գիտության, ժողովրդական լուսավորության և առողջապահության հետագա վերելքի ֆինանսավորման համար։ Բյուջեի ծախսերը կազմում են 1 միլիարդ 59,2 միլիոն ռուբլի, ըստ որում ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար հատկացված է 316 միլիոն ռուբլի, որը կազմում է բոլոր ծախսերի 29,9 տոկոսը. սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների համար նախատեսված է ծախսել 647,4 միլիոն ռուբլի կամ 61,3 տոկոս, կառավարման ծախսերը կազմում են 79,4 միլիոն ռուբլի՝ 7,5 տոկոս և մնացած ծախսերի համար նախատեսվում է 13,3 միլիոն ռուբլի կամ 1,3 տոկոս։

Ռեսպուբլիկայի 1947 թվականի ժողովրդատնտեսական պլանը նախատեսում է արդյունաբերության արտադրանքի աճ 17 տոկոսով։ Այս տարի ռեսպուբլիկայում կառուցվելու են մի շարք արդյունաբերական օբյեկտներ, որոնք ունեն ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն։ Շարունակվելու է ոռոգման ջրանցքների շինարարությունը, լայնորեն ծավալվելու է բնակարանային և կոմունալ շինարարությունը, իրագործվելու



են քաղաքների ու շրջանային կենտրոնների բարեկարգման գծով մի շարք ձեռնարկումներ։

1947 թվականի ժողովրդատնտեսական պլանի ու հետևապես բյուջեի մեջ հատուկ տեղ է գրավում արտասահմանից հայրենիք վերադարձող հայերի համար կատարվող բնակարանային շինարարությունը։ Պետական հատկացումներն ապահովում են մոտ 59 հազար քառակուսի մետր բնակելի տարածության կառուցումն ու շահագործման հանձնելը։ Նաև պետք է ավարտվի անցյալ տարի սկսած երեք ավանների շինարարությունը և բացի այդ կառուցվելու են չորս նոր ավաններ՝ Բերիայի անվան, Էջմիածնի, Կոտայքի և Վեդու շրջաններում։

Այդ ձեռնարկումների մեջ արտացոլվում է պարտիայի ու կառավարության և անձամբ մեծ Ստալինի հոգատար վերաբերմունքը հայրենիք ներգաղթող սովետական քաղաքացիների վերաբերմամբ։

1947 թվականի ընթացքում ռեսպուբլիկայում պետք է իրականացվի շինարարական աշխատանքների խոշոր ծրագիր։ Շինարարության տեմպերի արագացման հարցը ներկայումս ունի հատուկ նշանակություն,

որովհետև այդ տեմպերից է կախված պատերազմի հետևանքների արագ վերացումը — տնտեսության վերականգնումն ու զարգացումը, մեր ժողովրդի կյանքի նյութական պայմանների բարելավումը։ Այս տարվա բյուջեն ապահովում է նշված բոլոր ձեռնարկումների լրիվ ֆինանսավորումը։

Քաղաքների և շրջանային կենտրոնների բարեկարգման ու բնակարանային-կոմունալ տնտեսության արտալիմիտային ծախսերի համար հատկացվում է 50,5 միլիոն ռուբլի։ Կառավարությունը և Պարտիան մեծ ուշադրություն են նվիրում բնակչության կոմունալ սպասարկման ու կենցաղային պայմանների բարելավմանը, այդ նպատակի համար հատկացնելով խոշոր միջոցներ։

Գյուղատնտեսական և ջրային տնտեսության միջոցառումների, ռադման լայն ցանցի ստեղծման, կոլխոզներին սպասարկող ագրոտեխնիկայի և զոո-անասնաբուժական ցանցի ու լաբորատորիաների ֆինանսավորման համար բյուջեն նախատեսում է 46,8 միլիոն ռուբլի հատկացումներ։

Սովետական երկրում գործնականորեն ապահովվում են Ստալինյան Կոնստիտուցիայով քաղաքացիների համար երաշխա-



վորված իրավունքները — աշխատանքի, հանգստի, կրթության իրավունքը, քաղաքացիների ձրի բուժսպասարկումը, ապահովությունը ծերության և անաշխատունակության դեպքում։ Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների ֆինանսավորումը 1947 թվականի պետական բուջեով կազմում է 647 միլիոն 400 հազար ռուբլի, որը 151,9 միլիոն ռուբլով ավելի է անցյալ տարվա համեմատությամբ։ Այդ հատկացումներից ավելի քան 463 միլիոն ռուբլի, կամ 71,6 տոկոսը նախատեսվում է ժողովրդական լուսավորության ծախսերի համար։

Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների վրա կատարվող ծախսերի զգալի աճը, որ պայմանավորվում է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անշեղ իրագործմամբ, ցույց է տալիս ժողովրդի կուլտուրական մակարդակի բուռն վերելքը, նրա կյանքի պայմանների բարելավումը, սովետական կուլտուրայի, գիտության և արվեստի հետագա ծաղկումը։ Այդ հատկացումները կապահովեն սոցիալ-կուլտուրական հիմնարկների ցանցի աճումը, ուսումնա-դաստիարակչական աշխատանքների հետագա բարձրացումը։

Այս տարի ընդհանուր ուսուցման 1.155 դպրոցներում պետք է սովորեն 308 հազար 500 աշակերտ։ Տարրական, թերի միջնակարգ և միջնակարգ դպրոցների պահպանման համար հատկացվում է ավելի քան 173 միլիոն ռուբլի, կամ անցյալ տարվա համեմատությամբ 32 միլիոն ռուբլով ավելի։ Արտասահմանից հայրենիք վերադարձածների երեխաները նույնպես արդեն լրիվ ընդգրկված են զանազան ուսումնական հաստատություններում։ 8.785 երեխա, կամ ներգաղթած երեխաների 95 տոկոսից ավելին սովորում են մասսայական դպրոցներում, 123 երիտասարդներ սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում, 453 պատանիներ՝ ֆաբրիկա-գործարանային դպրոցներում և արհեստագործական ուսումնարաններում, բացի այդ 5215 հոգի սովորում են անգրագիտության վերացման դպրոցներում։

Երեխաների թիվը մանկապարտեզներում 1947 թվականին կազմելու է 10 հազար 500 հոգի, որոնց պահպանման համար հատկացվում է 28 միլիոն ռուբլի. յուրաքանչյուր երեխայի վրա կատարվող ծախսերը համարյա կրկնապատկվում են։



Մանկատներում երեխաների թիվը կազմելու է 5.000 հոգի՝ մոտ 30 միլիոն ռուբլի հատկացումով. մանկատների յուրաքանչյուր սանի պահպանման ծախսը ավելանում է մեկ ու կես անգամ։

Տեխնիկումների պահպանման ծախսերը կազմում են 29 միլիոն ռուբլի, կամ անցյալ տարվա համեմատությամբ 26 տոկոսով ավելի։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների հատկացումները այս տարի գերազանցում են 45 միլիոն ռուբլուց, 1946 թվականի համեմատությամբ աճելով 27,4 տոկոսով։

Կուլտուր-լուսավորական աշխատանքների ծախսերը բյուջեում կազմում են 18,4 միլիոն ռուբլի։ Միայն քաղաքային և գյուղական գրադարանների ու ակումբների պահպանման համար նախատեսվում է ծախսել 17 միլիոն ռուբլի։

Խոշոր միջոցներ են հատկացվում գիտահետազոտական հիմնարկների պահպանման համար, որոնցում աշխատում են 1.152 գիտական աշխատողներ։ Գիտա-հետազոտական հիմնարկներին հատկացվող ծախսերը 1947 թվականին կազմում են մոտ 63 մի-

լիոն ռուբլի, կամ նախորդ տարվա համեմատությամբ 13 միլիոն ռուբլով ավելի։

Արվեստի ձեռնարկումների ֆինանսավորման համար նախատեսվում է 32 միլիոն ռուբլի, որը կապահովի 1947 թվականի վերջին ունենալ 200 գործող կինոսարքավորում, 1945 թվականի 82-ի դիմաց։

Առողջապահության և ֆիզկուլտուրայի ծախսերը 1946 թվականի համեմատությամբ ավելանում են 37,5 միլիոն ռուբլով։ Մահճակալների թիվը հիվանդանոցների ցանցում հասցվելու է 5.250-ի, մշտական մսուրներում՝ 5.100-ի, սեզոնային մսուրներում՝ 35 հազարի, սանատորա-կուրորտային մահճակալների թիվը հասցվելու է 1000-ի, գործելու են 24 սանիտարա-էպիդեմիկ կայաններ։ 1947 թվին ռեսպուբլիկայում աշխատելու են 1703 բժիշկ՝ 1913 թվականին եղած 48-ի փոխարեն։

Սոցիալական ապահովության համար կատարվող հատկացումները 1947 թվականի բյուջեում կազմում են ավելի քան 43 միլիոն ռուբլի։ Այդ միջոցները հիմնականում ծախսվելու են նպաստների վճարման և Հայրենական պատերազմի հաշմանդամների ու զինծառայողների ընտանիքների նյութական-



կենցաղային պայմանները բարելավելու համար։

Բյուջեի մեջ արտացոլված են վարչա-կառավարչական ծախսերի կրճատման ուղղությամբ կիրառվող միջոցառումները— ավելորդ պաշտոնների, տեխնիկական ապարատի առանձին ավելորդ օղակների վերացումը, ապարատի կառուցվածքի կարգավորումն ու նրա առավելագույն էժանացումը։

Բյուջեի թվերը ինչպես հայելու մեջ արտացոլում են բոլշևիկյան պարտիայի, Սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի հոգատարությունը Սովետական Հայաստանի տնտեսության և կուլտուրայի հետագա աճման նկատմամբ։

Ստալինյան նոր հնգամյակի պլանների կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում պետական բյուջեն ունի խոշոր դեր։ Բյուջեի կատարումը ըստ էության հնգամյա պլանի կատարումն է։

Ա. ՇԵԿՈՅԱՆ

Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստր

# ՎԵՐԱԿԱՆԳՆՎՈՒՄ Է „ԶԱՊՈՐՈԺՍՏԱԼ"-Ը

«Զապորոժստալը» (Զապորոժյեի մետալուրգիական կոմբինատը) Սովետական Միության մետալուրգիայի զարդն է, նրա տեխնիկայի, նրա հզորության վառ արտահայտությունը։ Դնեպրի ափին կառուցված այդ հսկան աշխատում է Կրիվոյ Ռոգի երկաթի, Նիկոպոլի մարգանեցի, Դոնբասի քարածուխի բազայի վրա։ Մետալուրգիական այդ վիթխարի կառուցումը Ստալինյան հնգամյակների ամենաերիտասարդ կառուցումն է, որին պատերազմից առաջ հավասարը չկար ողջ Եվրոպայում։

1941 թվականի հոկտեմբեր-նոյեմբերին նախատեսված էր գործարկել նաև նրա չորրորդ դոմենյան հնոցը, բայց գերմանական զավթիչները ներխուժելով Սովետական



Ուկրաինայի տերիտորիան, խանգարեցին այդ պլանի իրագործմանը։ Գերմանական հորդաները, Սովետական Բանակի հուժկու հարվածների տակ նահանջելով, հիմնովին ավերեցին և մոխրակույտերի վերածեցին «Զապորոժստալը»։ Եվ նրանց թվում էր, թե «Զապորոժստալը» այլևս չի վերականգնվի, չի վերածնվի։ Զո՛ւր հույսեր։

Սովետական Միության ստեղծագործ ժողովուրդը, որին ղեկավարում է բոլշևիկների Պարտիան, Հայրենական Մեծ Պատերազմից հետո ընդունելով իր աշխատանքների ծրագիրը՝ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման հնգամյա պլանը, հաղթահարելով հետպատերազմյան դժվարությունները, մեկը-մյուսի հետևից վերականգնում է թշնամու կողմից ավերված գործարանները, ֆաբրիկաները, կառուցում է նորերը հանում իր երջանիկ ապագայի, հանուն մեր երկրում կոմունիստական հասարակության կառուցման։ Երեկ վերականգնվեց Դնեպրոգէսի առաջին ագրեգատը, այսօր «Զապորոժստալի» № 3 վիթխարի հնոցը և ջերմաէլեկտրակայանը, վաղը կվերականգնվեն հարյուրավոր այլ ձեռնարկություններ։

1944 թվականին Սովետական Միության

կառավարության որոշմամբ Զապորոժստրոյցիները բուռն խանդավառությամբ անցան ստեղծագործ աշխատանքի հսկա կոմբինատը վերականգնելու համար։ Կոմբինատի վերականգնմանը մասնակցում է ամբողջ սովետական երկիրը։ Զապորոժյեում ձեռք-ձեռքի տված աշխատում են լենինգրադցիներն ու ռոստովցիները, մոսկվացիներն ու կիևցիները, սիբիրցիներն ու ուրալցիները։ Սովետական Միության բոլոր կողմերից այստեղ են գալիս՝ ինժեներներ, տեխնիկներ, վարպետներ, բրիգադիրներ։ Միայն Ուկրաինայի ձեռնարկություններից շինարարությանը մասնակցում են 600 որակավորված մոնտաժնիկներ։ Անընդհատ այստեղ են գալիս բեռնավորված գնացքները՝ սարքավորմամբ և նյութերով։ Օրական 200 վագոն է բեռնաթափվում Զապորոժստրոյում, ավելի քան 100 գործարան է մասնակցում «Զապորոժստալի» վերականգնմանը, վերածնված Դնեպրոգէսը էլեկտրական հոսանք է տալիս «Զապորոժստալին»։

Սովետական մարդիկ, զինված առաջավոր տեխնիկայով, հաստատ իրենց խոստմանը, որ տվել էին մեծ առաջնորդին, ճիշտ ժամանակին գործարկեցին Սովետական Միության մեջ խոշորագույն դոմենյան



հնոցը՝ 1.300 խորանարդ մետր տարողությամբ, որի մեջ ձուլվում է մետաղը—չուգունը։ Երկրին շատ մետաղ է պետք, «մետաղը մեր արդյունաբերության հիմքերի հիմքն է»,— ասել է Ստալինը։ Մետաղի շնորհիվ ծաղկում է մեքենաշինությունը, հզորանում է մեր Հայրենիքի պաշտպանունակությունը, բարձրանում է աշխատավորների բարեկեցությունը։ Դեռ «Զապորոժստալի» շինարարության նախագծման օրերին՝ 1927 թվականին, ընկեր Ստալինը ասում էր «Պարտիայի խնդիրն է բոլոր միջոցներով առաջ շարժել մեր երկրի ինդուստրացումը»։

Իր մաշտաբներով չտեսնված աշխատանք են տարել «Զապորոժստալ»-ը վերականգնող շինարար-էնտուզիաստները։

Կարճ ժամանակամիջոցում՝ երեք տարվա ընթացքում «Զապորոժստալի» կոլեկտիվը, հաղթահարելով խոշոր դժվարություններ, մոխրակույտերից վեր հանեց առաջին դոմենյան հնոցը և երկրի համար նորից ձուլեց չուգուն։ Թե ի՞նչ վիթխարի աշխատանք է կատարել վերականգնողների կոլեկտիվը, բավական է նշել մի քանի փաստ։

Կոմբինատի վերականգնման ժամանակաշրջանում կառուցվել և շահագործման է հանձնվել 55 կիլոմետր երկաթուղի, մոնտաժ է արված ավելի քան 100 կիլոմետր

ջրմուղի խողովակներ և կոյուղիներ։ Էլեկտրոէներգիայի հաղորդման համար գործադրվել է 300 կիլոմետր կաբել, 8 ենթակայարան է կառուցվել, որից գլխավորը խոշորագույնն է ՍՍՌՄ-ում։

Երեք տարվա ընթացքում մաքրված է 225 հազար քառակուսի մետր փլվածք, լցված է ավելի քան 50 հազար քառակուսի մետր բետոն, վերամոնտաժ է արված 35 հազար տոննա և մոնտաժ՝ ավելի քան 50 հազար տոննա մետաղյա կոնստրուկցիա, կառուցվել է 75 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն և այլն։ Երեք տարվա ընթացքում «Զապորոժստալի» կոլեկտիվի շինարարության վրա գործադրվել է 10 միլիոն մարդ-օր աշխատանք։

Մինչև այս տարվա սեպտեմբերը բացի չուգունից «Զապորոժստալը» երկրին կտա պողպատյա բարակ թիթեղներ, որոնք շատ կարևոր են ավիացիոն, ավտոմոբիլային արդյունաբերության և մեքենաշինության համար։ Երկիրը կստանա որակյալ պողպատ։

Զապորոժյեն նորից դառնում է Սովետական Միության խոշոր ինդուստրիալ կենտրոնը, հարավային մետալուրգիայի մարգարիտը, որը Սովետական Միության էկոնոմիկայում խոշոր դեր է խաղում։

— ✻ —

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

# ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԱՆԽՈՒՍԱՓԵԼԻ ՈՒՂԵԿԻՑՆ Է

Գործազրկություն... Այս բառը բոլոր կապիտալիստական երկրներում սարսռեցնում է աշխատանքի մարդկանց։ Դրա հետ են կապված բուրժուական կարգերի սարսափելի երևույթները՝ աղքատությունը, սովը, աշխատավորների մահացությունը։ Գործազուրկին ճնշում է նաև այն գիտակցությունը, որ նա հասարակության համար ավելորդ, ոչ պիտանի մարդ է, որ իր ուժերն ու ընդունակությունները նա չի կարող գործադրել ոչ մի տեղ։ Ընկեր Ստալինը պատկերավոր կերպով գործազրկությունն անվանել է բանվոր դասակարգի համար չարիք։

Երկրորդ համաշխարհային պատերազմը վերջանալուց հետո նորից այդ չարիքի անողոք հարվածներն սկսել են տեղալ կապիտալիստական երկրների աշխատավորների վրա։ Արտասահմանից շարունակ հաղոր-

դագրություններ են ստացվում գործազրկության աճման և աշխատավոր մասսաների ծանր դրության մասին։

Կապիտալիստական աշխարհի գլխավոր երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում պաշտոնական տվյալներով այս տարվա մարտին գործազուրկների թիվը կազմում էր 2 միլիոն 300 հազար մարդ։ Մինչդեռ իրականում աշխատանք չունեցողները շատ ավելի են։ Այդ թվի մեջ չեն մտնում պատերազմի 1 միլիոն 600 հազար գործազուրկ վետերանները, որոնք ապրում են զորացրման ժամանակ ստացած խղճուկ նպաստով։ Իսկ եթե դրան ավելացնենք այն 1 միլիոն 700 հազար բանվորներին, որոնք արտադրության մեջ զբաղված են լինում 1-ից մինչև 14 ժամ, ապա փաստորեն աշխատանք չունեցող մարդկանց ընդհանուր թիվը կկազմի 5 միլիոն 600 հազար։ Հենց միայն Նյու-Յորքի փողոցներում թափառում են 300 հազար գործազուրկներ։ Դրանց մեծ մասն ամառը գիշերներն անցկացնում է բուլվարների նստարանների վրա, իսկ ձմեռը՝ քաղաքի ծայրամասերում գտնվող կեղտոտ որջերում։

Ճապոնիայում ներկայումս կա մոտ 8 մի-



լիոն գործազուրկ։ Միայն Տոկիոյում դրանց թիվը 750 հազարից ավելի է։

Անգլիայում պաշտոնական տվյալներով կա մոտ 800 հազար գործազուրկ։ Այս տարվա փետրվարին, ածխային ճգնաժամի ժամանակ, գործազուրկների թիվը հասավ 2 միլիոնի։

Ավելի քան 2 միլիոն գործազուրկ կա Իտալիայում։ Ահա թե նրանց վիճակի մասին 1947 թվականի մայիսի 1-ին ինչ էր ասում Աշխատանքի իտալական ընդհանուր կոնֆեդերացիայի քարտուղար Ջուզեպպե դի Վիտտորիոն.

«Սարսափելի են այն պայմանները, որոնց մեջ գտնվում են մեր գործազուրկ եղբայրները։ Եթե ծանր է նույնիսկ նրանց վիճակը, ովքեր աշխատավարձ են ստանում, ապա ողբերգական է այն մարդկանց դրությունը, ովքեր ապարդյուն կերպով խնդրում են աշխատելու հնարավորություն տալ իրենց։ Մինչդեռ Իտալիայում դեռևս կան մարդիկ, որոնք չարաշահում են ժողովրդի այդ դժբախտությունը և այն օգտագործում են իրենց օգտին միլիոններ ու միլիարդներ կուտակելու համար»։

Է՛լ ավելի ծանր է բանվոր դասակարգի

ու հատկապես գործազուրկների վիճակը գոմինդանյան Չինաստանում։ Բյուջեի կեսից ավելին ծախսելով իր իսկ ժողովրդի դեմ պատերազմ մղելու համար, Չինաստանի կառավարությունը բոլորովին չի մտածում խաղաղ արդյունաբերությունը վերականգնելու, բնակչությանը աշխատանք և ապրուստի միջոց տալու մասին։ Ամերիկացիները, օգտվելով այն բանից, որ զորքեր ունեն այդտեղ, երկիրը հեղեղել են իրենց արդյունաբերական ապրանքներով։ Դա հնարավորություն չի տալիս զարգացնելու չինական ազգային արդյունաբերությունը։ Ֆաբրիկաներն ու գործարանները Չինաստանում չեն գործում, իսկ գործազուրկների թիվը երկրում շատ ու շատ միլիոնների է հասնում։

Չինական «Հուացյաոժիբաո» թերթի հաղորդագրությամբ Չինաստանի խոշորագույն արդյունաբերական կենտրոնում՝ Շանհայում, որն ունի 3 միլիոն 900 հազար բնակչություն, գործազուրկների թիվը հասնում է 1 միլիոն 600 հազարի։ Նանկինում 800 հազար բնակչից 200 հազարը գործազուրկ են։ Բեյպինում 790 հազար բանվորներ աշխատանք չունեն, Կանտոնում գործազուրկ են 200 հազար մարդ։



«Գոմինդանի վերահսկողության տակ գտնվող տերիտորիայի համարյա յուրաքանչյուր քաղաքում,— գրում է թերթը,— գործազրկությունը ամենասուր պրոբլեմն է։ Ապրուստի միջոց չունեցող գործազուրկները դատապարտված են սովամահության։ Բազմաթիվ հուսահատված գործազուրկներ ինքնասպանություն են գործում»։

Չինաստանի Ազգային-քաղաքական խորհրդի անդամ Հուեն Յան-Բեյը այս տարվա մայիսի 20-ին խորհրդի նեսիայում հայտարարեց, թե Շանհայի փողոցներում յուրաքանչյուր օր սովից մեռնում են ավելի քան 2 հազար մարդ։ Դրանց մեծ մասը գործազուրկներ են։

Շանհայում և Չինաստանի այլ քաղաքներում կան հարյուր հազարավոր մուրացիկներ ու թափառաշրջիկներ։ Դրանք աշխատանքի ամեն մի հույս կորցրած մարդիկ են։

Գործազրկությունը կապիտալիզմի մշտական և անխուսափելի ուղեկիցն է։ Գործազրկություն առաջացնող և այդ կապիտալիզմի մշտական ուղեկիցը դարձնող գլխավոր պատճառը տնտեսության կապիտալիստական սիստեմի անարխիան է և անպլանայնությունը։

Մասնավոր կապիտալիստական արտադրությունը չի կարելի կազմակերպել պլանային հիմունքով։ Նրա միակ շարժիչ ուժն ու նպատակը բանվորների շահագործման հաշվին շահույթ ստանալն է։ Ձեռնարկության լիիշխան սեփականատեր կապիտալիստը կարող է ուզած րոպեին փակել ձեռնարկությունը, իր կապիտալը ներդնել արտադրության մեկ ուրիշ ճյուղի մեջ, որտեղից նա ենթադրում է ավելի մեծ շահույթներ ստանալ։ Այդ պատճառով էլ չկա նաև բանվորական ուժի պլանային բաշխում տնտեսության զանազան ճյուղերի միջև։

Բարձր շահույթի հետևից ընկնելը, ինչպես նաև կապիտալիստների միջև գոյություն ունեցող կոնկուրենցիան նրանց ստիպում է որոնել արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիներ։ Այդ նպատակով նրանք ընդարձակում և մեծացնում են արտադրությունը, ինչպես նաև կատարելագործում են տեխնիկան, բարձրացնում են արտադրության մեխանիզացիայի ու մեքենայացման աստիճանը, արտադրության մեջ գործադրելով ավելի ու ավելի մեծ թվով նորագույն դազգահներ։

Մեքենաների գործադրումը կրճատում է



ձեռքի աշխատանքը։ Ձեռնարկատերերի և նրանց կամքը կատարող կառավարությունների հաշիվների մեջ չի մտնում հոգատարությունը աշխատավորների մասին, նրանց աշխատանքով ու ապրուստի միջոցներով ապահովելու մասին։ Եվ արտադրության մեքենայացումը այնտեղ դուրս է մղում ու փողոց է շպրտում բանվորների մի մասին, ուժեղացնում է մնացած բանվորների շահագործման աստիճանը։

Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիայի հանձնաժողովը, որ վերջերս այցելել էր Ճապոնիա, եղավ Տոկիոյի երկաթուղային արհեստանոցներում։ Մտնելով դարբնոցը, հանձնաժողովի անդամները տեսան, որ մի քանի փութ քաշ ունեցող երկաթի կտորները շոգեմուրճի տակ են դրվում ձեռքով։ Մինչդեռ հենց այդտեղ՝ դարբնոցում, պարապ կանգնած էին հատուկ բեռնամբարձ մեխանիզմները։ Հանձնաժողովի անդամներից մեկը հարցրեց բանվորին, թե ինչու՞ չեն օգտագործվում այդ մեխանիզմները և ե՞րբ դրանք գործի կդրվեն։ Բանվորը սարսափեց։ Նա պատասխանեց, որ եթե մեխանիզմները գործի դրվեն, ապա մի քանի

*բանվոր կզրկվի աշխատանքից... իսկ Ճապոնիայում կա մոտ 8 միլիոն գործազուրկ։*

*Կապիտալիստական երկրներում գործազուրկների հսկայական բանակը համալրվում է նաև քայքայված գյուղացիների հաշվին, որոնք քաղաքներն են գնում ապրուստի միջոց որոնելու։*

*Այլ բան է մեր սոցիալիստական պետության մեջ, որտեղ ժողովրդական տնտեսությունը զարգանում է ըստ պլանի։ Մեքենաների, կատարելագործված դազգահների գործադրումը մեր ֆաբրիկաներում ու գործարաններում ոչ միայն չի սպառնում բանվորի աշխատանքին, այլ ընդհակառակը հեշտացնում է նրա աշխատանքը, բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, տանում է դեպի ապրանքների առատություն՝ ի բարօրություն ամբողջ ժողովրդի։ Արտադրության անընդհատ աճը պահանջում է հարյուր հազարավոր նոր որակյալ բանվորներ։ Եվ, եթե աշխատանքի մեխանիզացիան հնարավորություն է տալիս բանվորներին ազատելու մեկ ցեխում, ապա այդ բանվորներն անմիջապես աշխատանքի են անցնում մյուս ցեխերում կամ տեղավորվում են այլ ձեռնարկություններում։*



*Կարելի՞ է արդյոք ոչնչացնել գործազրկությունը։ Այս հարցին պատասխան է տալիս մեր սոցիալիստական պետությունը։ Մեզ մոտ էլ գործազրկություն կար, բայց այժմ չկա՛, և այլևս երբեք չի լինի։*

*Կապիտալիստական երկրների կառավարողները պայքարում են արդյո՞ք գործազրկության դեմ։ Ո՛չ։ Նրանք պայքարում են ոչ թե գործազրկության, այլ գործազուրկների՝ աշխատանք պահանջողների դեմ։ Ամբողջ խնդիրն այն է, որ կապիտալիստներին հարկավոր է գործազրկությունը։ Նրանց համար շատ կարևոր է, որպեսզի բանվորների գլխին միշտ կախված լինի գործազրկության սպառնալիքը։ Զգտելով բանվորների աշխատանքից քամել որքան կարելի է ավելի շատ շահույթ, կապիտալիստները երկարացնում են բանվորական օրը, կրճատում են աշխատավարձը։ Կապիտալիստական պետությունը ճնշում է բանվորներին, նրանց զրկում է ամեն մի իրավունքից։*

*Բանվոր դասակարգը համառ, ծանր, հաճախ արյունահեղ պայքար է մղում կապիտալիստների դասակարգի դեմ։ Այդ պայքարի մեջ գործազրկությունը մի զորեղ զենք է կապիտալիստների ձեռքին, իսկ բանվորնե-*

*րին նա դարձնում է բոլորովին անպաշտպան քանի որ ուժեղացնում է նրանց կախումը ձեռնարկատերերից։*

*Գործադուլի վերացումը կապիտալիստին կզրկեր աշխատանքի պայմանների և աշխատավարձի հարցում իր կամքը բանվորներին թելադրելու հնարավորությունից։ Գործադուլի սպառնալիքի տակ բանվորները կկարողանային կապիտալիստին ստիպել կատարելու իրենց պահանջները, որովհետև նա չէր կարողանա հեռացնել գործադուլավոր բանվորներին և ընդունել ուրիշներին։ Այլ բան է, երբ կա գործազրկություն։ Կարիքից հուսահատության հասցված գործազուրկը համաձայնվում է աշխատանքի նույնիսկ ամենածանր պայմաններին, նույնիսկ ամենացածր աշխատավարձի։*

*«Բանվոր ժողովուրդը ավելի շատանում է,— գրում էր Լենինը,— գյուղացիները քայքայվում են և գյուղերից փախչում քաղաքներն ու ֆաբրիկաները։ Կալվածատերերն ու գործարանատերերը մեքենաներ են գործադրում, որոնք բանվորներից խլում են նրանց աշխատանքը։ Քաղաքներում գնալով ավելի շատանում է գործազուրկների թիվը,*



*գյուղերում գնալով շատանում է աղքատների թիվը. քաղցած ժողովուրդն ավելի ու ավելի է իջեցնում վարձը»։*

*Հենց այդ էլ հարկավոր է կապիտալիստներին։ Ուստի նրանք ոչ միայն չեն պայքարում գործազրկության դեմ, այլ ձգտում են ամեն կերպ ավելացնել գործազրկությունը։ Իսկ կապիտալիստներին ծառայող և նրանցից վարձատրվող թերթերն ու ժուռնալները նույնիսկ հավատացնում են, թե գործազրկությունը ոչնչացնել անհնարին չի կարելի, թե դա միանգամայն բնական ու նորմալ երևույթ է։ Այսպես օրինակ, Նյու-Յորքի ռադիոն վերջերս հայտարարեց, թե Միացյալ Նահանգների համար «առնվազն 2 միլիոն գործազուրկ ունենալը անխուսափելի է և նույնիսկ նորմալ»։*

*Անխուսափելի՞ է։ Այդ ճիշտ է, որովհետև կապիտալիստական արտադրությունը, ինչպես մատնանշել է Վ. Ի. Լենինը, «չէր կարողանա գոյություն ունենալ, եթե չլիներ ավելորդ (այսինքն կապիտալիզմի կողմից պահանջվող բանվորների միջին թիվը գերազանցող) բնակչություն, որը պատրաստ է ամեն մի րոպե աշխատող ձեռքեր տրամադրել արդյունաբերության ամեն մի ճյուղի*

համար կամ ամեն մի ձեռնարկության համար։

Գործազրկության մեկընդմիշտ վերջ դընել կարելի է միմիայն ոչնչացնելով այն պատճառները, որոնք ծնում են գործազրկությունը, այսինքն՝ ոչնչացնելով կապիտալիզմը։ Այդ տեսակետից ամբողջ աշխարհին օրինակ տվեց մեր սոցիալիստական պետությունը, որը ոչ միայն ոչնչացրել է գործազրկությունը, ոչ միայն իր Կոնստիտուցիայի հոդվածներից մեկում գրի է առել յուրաքանչյուրի աշխատանքի անխախտ իրավունքը, այլև երաշխավորում է սովետական ժողովրդի այդ պատմական նվաճման, մեր Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռեվոլյուցիայի նվաճման իրագործումը, ռեվոլյուցիայի, որը մեր երկրում վերջ դրեց կապիտալիստական կարգերին։ Ն. ՇՄԵԼՅՈՎ

Պատ. խմբագիր՝ Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Վ 02496, Պատվեր № 941, Տիրաժ 10.000
Ստորագրված է տպագրության 15/VII 1947 թ.։

Պոլիգր. և Հրատ. Վարչության № 2 տպարան, Երևան

Отдел проп. и агитации ЦК КП(б) Армении,
Блокнот агитатора